ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 11 1973

ԶԱՎԵՆ Ծ. Վ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ
(ԱՄՆ)

# ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐ ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ ԱՄԵՐԻԿԱՅՈՒՄ

## Ա. ՊՐԻՆՍՏՈՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ԳՐԱՏԱՆ ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԸ
## (PRINCETON UNIVERSITY LIBRARY, PRINCETON, NEW JERSY)

*Նյու Ջերսի նահանգի Պրինստոն համալսարանի գրատան մեջ ի պահ դրված են հայերեն հինգ ձեռագիրներ և կարգ մը պատառիկներ, ինչպես նաև հմայիլ մը, զորս տեսնելու առիթն ունեցանք։ Ատոնց համառոտ նկարագրությունը ստորև կներկայացնենք։ Հիշյալ ձեռագիրներեն չորսը* Robert Garret Collection-*ի №№ 19—22-ի ներքև դասավորված են, իսկ հինգերորդը կկրե № 14399։*

### 1 (19)
### *ՍԱՂՄՈՍԱՐԱՆ—ԺԱՄԱԳԻՐՔ*

ԺԶ—XVI

**Թերթ՝** *100։* **Նյութ՝** *բարակ մագաղաթ։* **Մեծություն՝** *12×9×2 սմ։* **Գիր՝** *բոլորգիր, կարմիր և ոսկեգիր գլխագրերով զարդարուն։* **Կազմ՝** *կաշեպատ տախտակ։* **Հանգամանք՝** *լավ, սակայն սկզբեն որոշ թվով թերթեր կպակսին։* **Հիշատակարան՝** *չունի։*

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*Ձեռագիրս կսկսի «Ուրախ եղէ ես ոյք ասէին ցիս» սաղմոսով։ Թերթ 30ա-ով կսկսի ժամագիրքը՝ «Հրաժարիմք» աղոթքով, 42ա-ով՝ Գիշերապաշտաման կարգը՝ «Տէր եթէ զշրթունս իմ բանաս» սաղմոսով և հաջորդաբար՝ Առավոտեան, Արևագալի, Հասարակաց աղօթից Գ ժամու, Զ ժամու և Թ ժամու։ Ձեռագիրս կավարտի «Հաւատամք»-ի «յարարիչն երկնի և երկրի երև» բառերով։*

### 2 (20)
### *ՀԱՄԱՌՈՏ ՁԵՌԱՑ ԺԱՄԱԳԻՐՔ*

ԺԳ—XIII

**Թերթ՝** *203։* **Նյութ՝** *թուղթ։* **Մեծություն՝** *9×7×4 սմ։* **Հանգամանք՝** *գոհացուցիչ, սակայն սկզբեն քանի մը թերթ կպակսին։* **Կազմ՝** *արծաթապատ. արվեստագետ արծաթագործի ձեռագործ է։ Առաջին փեղկի վրա քանդակված է Հիսուսի ծնունդը. վերևը՝ հրեշտակներ, աջին՝ Մարիամ և Հովսեփ և երկու այլ մարդիկ, կեդրոնը՝ Հիսուս մանուկ մսուրի մեջ և երկու կենդանիներ։*

Երկրորդ փեղկի վրա Սուրբ Երրորդությունն է։ Ունի հետևյալ արձանագրությունը. «Ժամագիրքս այս արևալ հալալ ընչիս իւր զարբարեցի արգաթու Կեսարիա քաղաքին անարժան ձեռօք արգաթագործ Շահմիրին Մ. Կարապետ թւին ՌՃԲ (1653)»։ Ձեռագիրս պահված է իր հատուկ չափով պատրաստված կանաչորակ կաշեպատ տուփի մը մեջ։

3 (21)

ՁԵՌԱՑ ՇԱՐԱԿՆՈՑ

ԺԷ—XVII

Գրիչ՝ Ալէքսան երէց։

Թերթ՝ 269։ Նյութ՝ թուղթ։ Մեծություն՝ 16×11×6 սմ։ Գրություն՝ միասյուն։ Գիր՝ նոտրգիր և խազագրյալ։ Մանրանկար՝ չունի։ Լուսանցազարդեր՝ մեջ ընդ մեջ, սակայն ոչ շատ բարձր որակով, ընդհանրապես թռչնային և բուսական նկարներով։ Հանգամանք՝ լավ։ Կազմ՝ արծաթյա, քանդակազարդ. Առաջին փեղկի վրա քանդակված է վերջին դատաստանը. Աստված երկնքի մեջ հրեշտակներով շրջապատված, որոնք փող կհնչեցնեն։ Ձախին՝ դժոխք ներկայացնող կրակ, իսկ վարը, աջին՝ ձիավոր մը և երկու զինվորներ իրենց սուրերով։ Փեղկի ստորին մասում արձանագրված է. «Յամօթ լիցին ամենեքեան որք չարչարեն զծառայս քո»։ Երկրորդ փեղկի վրա քանդակված է Այրի կնոջ լուման. կինը գանձանակի մեջ դրամ կը ձգե՝ կանգնած տաճարի դրան առջև. աջին՝ Քրիստոս և երկու աշակերտներ կնայեն այրի կնոջ։ Փեղկի վերին մասում արձանագրված է. «Ժամագիրքս այս արևալ հալալ ընչից իւր՝ զարբարեցի արգաթու Կեսարիա քաղաքին անարժան ձեռօք արծաթագործ Մալխասին Մ. Օհաննէս թուին ՌՃԺԹ (1670) վասն յիշելութեան ամենայն ժամ և գոհանալ փրկչին մերոյ Յիսուսի Քրիստոսի», իսկ ստորին մասում՝ «Ուրախ եղէ ես ոյք ասէին ցիս ի տուն տեառն գնասցուք մեք» սաղմոսը։

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Թերթ 1ա-ը կսկսի Կանոն Գ աւուրն-ի «Էակից Հօր և Հոգւոյն անսկիզբն որդի անմայր յառաջնումն անտառկին և ընդ Հօր յաւիտեան» շարականով։

Թերթ 2ը. Կանոն Դ աւուրն։

Թերթ 93ը-էն ետք առնվազն մեկ թերթ կպակսի, ուր պետք էր սկսվեր Կանոն Սրբոյ Յարութեան և օրվան օրհնությունը՝ «Այսօր յարեաւ»։

Թերթ 269ը մատենիս վերջին էջն է, ուր «Խորհուրդ խորին» շարականը կընդհատվի «Իմամբը թագ ի գլուխ պահեսցես ըզմիտս և ըզգայարանս խաչանիշ ուր» տողով։

ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ

93ը (գրչի). Զմեղսաթաւալ զԱլէքսան երէցս յիշեա ի Տէր։
170ը (գրչի). Ձեռքս փտի և հողանա,

Փոշի մոխիր 'ւ անպիտանա,
Գիրս յիշատակ առ ձեզ մնա,
Բերան մ' ասէք Տէր ողորմեա, աղաչեմ։

4 (22)

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

ԺԷ—XVII

Թերթ՝ 233։ Նյութ՝ *մագաղաթ։* Մեծություն՝ *12×8×5,5 սմ։* Գիր՝ *նոտրգիր։* Տող՝ *20։* Մանրանկար՝ *ունի միայն լուսանցազարդեր և զարդագրեր, գունավոր և գեղեցիկ։* Հանգամանք՝ *շատ լավ։* Կազմ՝ *կաշեպատ տախտակ։* Պահպանակ՝ *մագաղաթյա։*

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*ա. Սաղմոսք Դաւթի։*

*բ. Ներսիսի Շնորհալւոյ Հաւատով խոստովանիմ։*

### ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ

*233բ (Հետագայի). Աստուծոյ ծառայ տիրացու Սահակին՛ հացէ։*

*Գառն աստուծոյ, որ առաքեցար ի հօրէ՝ բառնալ զմեղս աշխարհի, քաւեա և թող զյանցանաց զմեղս ծառայիս քո... Երկոտասան առաքեալք Քրիստոսի, յորժամ նստիք աթոռ դատողական ընդ ձերում, դուք բարեխօս լերուք նմայ՝ վասն մեղաւոր ծառայիս աստուծոյ։*

*(Վերջին պահպանակի վրա, նույն ձեռքով). Տեառն ամենայնի, մեղայ քեզ, լուսոյ հոգի մէջս մեռաւ ՌՄ[Ճ]ԽԲ (1793), Աստուած ողորմի հոգուն, յուլիսի 17, Վարդեվառի մեռելոց օր։*

*(Նույն պահպանակի ստորին մասում). 9481։*

5 (14399)

## ՃԱՇՈՒ ԱՒԵՏԱՐԱՆ

Կաֆա ՌՃԺԹ—1670

Գրիչ՝ *Նիկողոս Մելանաւոր։*

Թերթ՝ *212։* Նյութ՝ *թուղթ, ողորկ և փայլուն։* Մեծություն՝ *22×17×4 սմ։* Գրություն՝ *երկսյուն։* Գիր՝ *բոլորգիր։* Տող՝ *22։* Մանրանկար՝ *չորս ավետարանիչներ (8բ, 68բ, 106բ, 166բ), կիսախորաններ (9ա, 69ա, 107ա, 167ա), հարուստ լուսանցազարդեր, թվով 200 հատ, որոնցից երկուսը (120ա, 162ա)՝ Հիսուսի պատկերն է՝ ծնկաչոք աղոթելիս. հատկապես հիշատակելի են չորս կիսախորաններում մոտ եղած լուսանցազարդերը, որոնք գերազանց արվեստով են կատարված։ Գույները՝ կարմիր, կապույտ և ոսկի, թարմ են և իրենց փայլը չեն կորսնցուցած։* Պահպանակ՝ *չգրված մաքուր մագաղաթ, հինգ առջև և հինգ ետև։* Հանգամանք՝ *գերազանց։* Կազմ՝ *արծաթապատ. առաջին փեղկի վրա քանդակված է խաչելությունը, իսկ չորս անկյուններում՝ Դավթի («Դ»), Սողոմոնի («Ս»), Երեմիայի («Ե») և Եզեկիելի («Ե») դիմապատկերները։ Երկրորդ փեղկի վրա Քրիստոսի հարության քանդակն է, չորս անկյուններում՝ Հովհաննես («Յ»), Մատթեոս («Մ»), Ղուկաս («Ղ») և Մարկոս («Մ») ավետարանիչ-*

*ներսն դիմապատկերներն են իրենց համապատասխան խորհրդանիշերով՝ արծիվ, մարդ, ցուլ, առյուծ։*

**Մանր.** *Ձեռագիրս կպահվի արծաթյա ծանր սնտուկի մը մեջ, զմրեխտավոր և տապանակի ձև, հատկապես պատրաստված եկեղեցվո խորանին վրա դետեղվելու համար։ Սնտուկը քանդակազարդ է՝ սուրբ գրային այլազան դրվագներու պատկերներով։*

*Երկու նամակներ կան ձեռագրիս մեջ։*

*ա. Զոնի գիր մը 1919 թվակիր՝ ստորագրված Պ. Կյուլպենկյանի և Մ. Գարակյոզյանի կողմե և ուղղված ամերիկացի բարերար* Dodge-*ին, հետևյալ ձևով.*

The Word of God
to a
Man of God
Philanthropist Mr. Clevel and Dodge
New York City, January 3, 1919
B. Gulbenkian
M. Karagheusian

Dodge *ձեռագիրը նվիրած է Բրինսթընի համալսարանին։*

*բ. Անգլերեն լեզվով նամակ մը՝ № 480 և 23 օգոստոս 1922 թվակիր, ստորագրված Կ. Պոլսո Զավեն Պատրիարքե։ Գիրս գնահատական երկարաշունչ նամակ մըն է ուղղված* Mr Cleveland Dodge-*ի՝ վերջինույս կողմե հայ գաղթականության մատուցած բարերարությանց համար։ Նամակը կմանավորե Իսթանպուլի մեջ հիմնադրված* "Cleveland Dodge Home" *որբանոցը՝ կառուցված Ամերիկյան նպաստամատույց ընկերության կողմե։*

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*Չորս Ավետարաններ։ Մատթեոսի Ավետարանը կբացվի գեղեցիկ կիսախորանով մը և պայծառ լուսանցքի զարդերով։ Հանդիպակաց էջին վրա Մատթեոսն է նստած՝ գիրքը ձեռքին։ Նույն արվեստը կրկնված է մյուս երեք Ավետարաններու սկիզբը։*

*ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ*

*211ա—212բ. Արդ, ես տրուպս և անպիտան,*
*Հողս, մոխիր և անարժան,*
*Ձեզ աղաչեմ զամենեսեան՝*
*Հայցել մեղացն իմ թողութեան,*
*Նիկողոսիս գէշ, անպիտան…*

*Վասն որոյ և ես մեղապարտ ոգի Նիկողոս անարժան ծառայ ծառայից Աստուծոյ յանձն առեալ՝ յոգւոյ չափ կատարեցի զսուրբ հոգէշունչ, աստուածազարդ, աստուածախօս սուրբ Աւետարանս… Գրեցաւ սուրբ Աւետարանս ձեռամբ նուաստ և յետին անարհեստ գրչի Նիկողոսի մեղապարտի, ունայնա-*

*գործ Մելանաւորի, ի թուաբերութեան Աբեթական տոմարի ՌՃԻԹ (1670)*, ի բառոյց և յընտիր օրինակէ, զի գաղափար սորին էր ի դրանէ ամենասրբուհւոյ Աստուածածնի եկեղեցւոյն ի Բջնի կառուցելոյ, ի ձեռանէ ստուգեցեալ Մովսիսէ արի և քաջ փիլիսոփայէ և իմաստախոհ եպիսկոպոսէ, ի յաշխարհիս յԱրարատեան, ի քաղաքիս Երեւան, ի գիւղն Բջնի, ընդ հովանեաւ ամենասրբոյ Աստուածածնին, ի յառաջնորդութեան սուրբ աթոռոյս Դաւթի արհի և պանծալի եպիսկոպոսի և իմաստութեան ցանկացողի, ի հայրապետութեան հայոց տեառն... շնորհազարդ և լուսանկար սուրբ Աթոռոյն էջմիածնի... (Հիշատակարանը կշարունակվի մոտ յոթը սյունակով, ուր, սակայն, պատմական հատկանշական դեպքեր չեն արձանագրված)։*

6

*ՀՄԱՅԻԼ*

ԺԷ—XVII

Գրիչ *(հետին)*՝ *Ովանէս*։ Ստացող՝ *Գուլնազար*։

Թերթ՝ *1*։ Նյութ՝ *թուղթ*։ Մեծություն՝ *40×9 սմ*։ Գրություն՝ *միասյուն*։ Գիր՝ *նոտրգիր*։ Ժամանակ՝ *անհայտ, հավանաբար ԺԷ դարում*։ Մանրանկար՝ *Ս. Պետրոս, Պողոս, Աստվածածին, Մատթեոս, Մարկոս, Ղուկաս, Հովհաննես, Գաբրիել հրեշտակապետ, Գրիգոր Լուսավորիչ և Ներսես Շնորհալի*։

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*ա. Մաղթանք Սուրբ Աստուածածնի. Եւ արդ ի վերայ այս բանեայց... (Նարեկեն)։*

*բ. Աւետարան բժշկութեան։*

*գ. Մաղթանք առ իննեակ դասս։*

*դ. Հաւատով խոստովանիմ Ս. Ներսիսի Շնորհալւոյ։*

*Առանձնե «Մաղթանք առ իննեակ դասս» ամբողջությամբ կընդօրինակենք ստորև։*

*ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ*

*— Սուրբ առաքեալդ Պետրոս, բարեխօս առ տէր մեր Յիսուս Քրիստոս, զի ողորմեսցի խրում ծառայի Գուլնազարի, և փրկեսցէ յամենայն փորձանաց երևելեաց և յաներևոյթ թշնամւոյ. մեղաց փրկեա, ի մեղաց ազատեա, և պահեսցէ մինչև ի կէտ կողման խրոյ անխռով խաղաղութեամբ և անսայթաքելի կենօք, մինչև ի խորին ծերութիւն, զարմօք և զաւակօք, որդւովք և դստերօք, և ամենայն գոյական իրօք ծաղկեսցուսցէ (անունը սրբված և վրան գրված) ծառայն աստուծոյ Ովանէսին։*

*— Քրիստոս ամենակալ իբրև արդարացուցանել կամեցար, և ոչ կամեցար խոտել զիր ստեղծուածն, իբրև հոտս չարչարեալ՝ ողորմեցար. նոյն ողորմութեամբ ողորմեա ծառայիս... Ովանէսին։*

---

* *Բնագրում՝ ՌՃՀԹ (1730), որ ակնբախ վրիպակ է, քանի որ Նիկողոս Մելանավորը վախճանվել է 1693 թվականին։* Խմբ.։

### Մաղթանք առ իննեակ դասս

*Արդ, պաղատիմք առ հոգեղէնս, մեք որ տկարս և հողեղէնս,*
*Որք սպասաւորք էք աստուծոյ՝ մաքուր բնութեամբ և կայանով,*
*Սուրբ պաշտօնեօք և սպասաւորք, հզօր բանին իր կատարողք,*
*Իցս երիս իննեակ դասուք երրեակ և մի աստուածութեան,*
*Որդւոց մարդկան նախախնամող և յերկնայինս վերաբերողք,*
*Մանաւանդ մեզ ծանուցեալք, զի երկրայնոցս էք մերձաւորք:*
*Սուրբ Գաբրիէլ և Միքայէլ հրեշտակապետք բարձրեալոյն,*
*Որք աստուծոյ կայք առաջի՝ մաղթել զմերն փրկութիւն,*
*Ընկալարուք, վեհք ի տնկոց, զընծայս բանի աղքատանաց,*
*Իբրև ծովու կաթիլ մի ջրոյ, կամ եթերին նշոյլ ինչ հրոյ,*
*Զոր անմահից աւուր տօնի մահկանացուս ձեզ ընծայի,*
*Անմարմնական հոգեղինաց՝ մարմնաւորքս և հողեղէնքս,*
*Բարեբախտից և երջանկաց՝ թշուառականս և թարմատարս,*
*Եւ յաննուազ ձեռամ բարեաց փոխադրեցէք մեզ բղխտոյս,*
*Զաստուածային և զհոգևոր զառ ի վերուստ շնորհաց զեղումն,*
*Մաղթելն ընդ մեր բարերարին, զոր և առնէք ի սկզբանէ,*
*Զգործս ձեռաց քոց աւելով, անտես ի քէն ոչ առնելով:*
*Զնոյն պաղատանս ի յայժմ աւուր խնդրեմք ի ձէնջ առաւելով՝*
*Յաղագս մերոյս եկեղեցւոյ և ընդհանուր սուրբ հաւատոյ,*
*Երկրպագուացս ընդ ձեզ հոգւով ամենասուրբ Երրորդութեան,*
*Խաղաղական շնորհել զկեանս ի կրկնակի մեր ներհակաց,*
*Նաև զմերս անարժանից զպաղատանս այս աղօթից:*
*Ձեր բուրվառօք իմանալեօք, խնկարկեսջիք մեծ արքային,*
*Ուստի զլրումն մաղթանաց յառատաձիր պարգևողէն,*
*Բարեխօսութեամբ սրբոց հրեշտակապետացն Գաբրիէլի և Միքայէլի,*
*Ողորմեա, Տէր, ծառայիս քո Ովանէսին:*

## Բ. ՖԻԼԱԴԵԼՖԻԱ ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԸ

(Free Library, Phila., Pa., USA)

*Գրատանս մեջ կան հայերեն տաս ձեռագիրներ, որոնք կկրեն 115—124 թվահամարները և հնատիպ գիրք մը: Ստորև կտանք անոնց համառոտ նկարագրությունները:*

1 (118)

*ԱՒԵՏԱՐԱՆ*

ԺԶ—XVI

Թերթ՝ *302:* Նյութ՝ *մագաղաթ:* Մեծություն՝ *18×13×6,5 սմ:* Գրություն՝ *երկսյուն:* Գիր՝ *գեղեցիկ բոլորգիր, առոգանության նշաններով:* Տող՝ *20:* Մանրանկար՝ *3 հատ ավետարանների սկիզբը. Մատթէոս՝ 14բ, Մարկոս՝ 103բ, Հովհաննէս՝ 243բ, ունի նաև խորաններ, կիսախորաններ ու լուսանցազարդեր՝ ամեն երկու էջի վրա մեկ հատ, կարմիր ու կապույտ գույնե-*

բով, վարպետ արվեստավորի մը գործ: Պահպանակ՝ մագաղաթյա, 1-ական թերթ սկզբէն և վերջէն: Կազմ՝ կաշեպատ տախտակ, զարդարուն. առաջին փեղկի վրա խաչելության դրոշմատիպ: Հանգամանք՝ լավ: Հիշատակարան՝ չունի:

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ա. Թուղթ Եւսեբի առ Կարպիանոս:
բ. Համաբարբառ կանոնատախտակներ:
գ. Համաձայնութիւն աւետարանչաց:
դ. Չորս Աւետարաններ:

## 2 (119)

## ԱՒԵՏԱՐԱՆ

(Հ ա յ ա տ ա ռ  թ ո ւ ր ք ե ր ե ն)

[Ատանա] ԺԷ—XVII

Ստացող՝ Խէրանչայ աղա և ամուսին իւր՝ Անա խաթուն:

Թերթ՝ 169: Նյութ՝ թուղթ: Մեծություն՝ 18×11,8×3,5 սմ: Գիր՝ բոլորգիր, սկզբնատառք՝ կարմիր: Տող՝ 36: Մանրանկար՝ 1ա (Ձիավոր մը խաչ ի ձեռին և աջ ձեռքին երկար նիզակ, որով կսպանե ուրիշ ձիավոր մը, ավելի փոքր չափով քան առաջինը. ձիավորի խաչի կողքին գրված է կարմիր մելանով «Պարոն Խէրանչէն է գայլադգիսն կատրէ»), 1բ (խորանազարդ համաբարբառ կանոնատախտակ), 2ա (Ձիավոր մը՝ աջ ձեռքին խաչ և ձախին՝ նիզակ մը, կսպանե վիշապը, մոտը կա հետևյալ արձանագրությունը՝ «Սուրբ Սարգիսն է գերեաց գերէհան»: Ձիուն ետին կերևին երկու գմբեթ, որոնց համար կարմիր մելանով գրված է՝ «գերիքն»), 3բ (Մատթէոս ավետարանիչ), 43ա (Մեծ խաչ մը՝ գագաթին Քրիստոս, գրված՝ «Գալբատեան սուրբ խաչն զՔրիստոսի ի գլուխն ունի», Քրիստոսի աջին՝ «արեգակն», իսկ ձախին՝ «լուսինն». Խաչին չորս անկյունները չորս հրեշտակներ փողեր կհնչեցնեն՝ «Փողն հնչէ»: Խաչին ստորոտը երկու անձեր, այր մը և կին մը՝ «Խէրանչայ աղէն է և ամուսինն իւր՝ Անա խաթուն, ստացող սուրբ աւետարանիս»), 81բ (Մարկոս ավետարանիչ), 84բ (Ղուկաս ավետարանիչ), 85բ (Տեառնընդառաջ՝ Մարիամ, Հիսուս Քրիստոս, Աննա, Սիմեոն Ծերունի և ետին Հովսեփ՝ տատրակներ ձեռքին. պատկերին վրա գրված է՝ «Սուրբ Տեառնընդառաջն է»), 128բ (Հովհաննես ավետարանիչ), 156բ (Հոգեգալուստ, տակը գրված՝ «Գան գլուխը ամըն»), 164բ և 165ա (Հին Կտակարանի 8 մարգարեներու այածո պատկերներ, որոնք փակցված են հետագային և վրայեն անճաշակ գույներով անցած): Կազմ՝ կաշեպատ տախտակ, երկու երեսներն ալ ոսկեզօծ շրջանակ, մեջը խաչ մը, վրան խաչելություն: Հանգամանք՝ լավ: Հիշատակարան՝ չունի (ըստ Muhammad Simsar-ի ձեռագիրս պետք է գրված ըլլա Ատանա, Կիլիկիա):

Մանր. Ձեռագրիս մանրանկարները հնագույն ուրիշ ձեռագրե մը առնըված և փակցված են հոս, հետևաբար «Խէրանչայ» և անոր ամուսին «Անա խաթուն» հնագույն ձեռագրի ստացողներ պետք է նկատել: Ձեռագրիս կազ-

*մի առաջին փեղկի ստորի ներքևում կա սեփականատիրոջ անունը՝* M. Louise Stowell.

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*ա. 1բ. Համաբարբառ կանոնատախտակ (հին ձեռագիր)։*

*բ. 2ա. Նախադրությունն Մատթեոսի ավետարանին (հին ձեռագիր)։*

*գ. 2բ—3ա. Ավետարան Մատթեոսի. Ա, 1—10 (հին ձեռագիր)։*

*դ. 4ա—մինչև վերջ՝ Ավետարան Մատթեոսի (հայատառ թուրքերեն. մինչև է գլխի 23 համարը գրված է նաև հայերեն բնագիրը թուրքերենին հանդիպակաց, պարբերաբար, մեկ մը աջին և մեկ մը՝ ձախին, իսկ անկե ետքը շարունակված է միայն թուրքերենով)։*

3 (122)

*ԺՈՂՈՎԱԾՈՒ*

Ակներ — Ձ[Ժ]Զ—1267

Գրիչ՝ *Յոհաննէս։* Հետին կազմող՝ *Մատթէոս եպս. (1654)։*

Թերթ՝ *92։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *13×9×3 սմ։* Գրություն՝ *երկսյուն։* Գիր՝ *բոլորգիր, խորագրերն՝ կարմիր։* Տող՝ *27։* Կազմ՝ *կաշեպատ տախտակ, մաշված։* Հիշատակարան՝ *ունի։*

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*ա. 2ա—56ա.* Ճաշոց։ *Սկսի. «Յունուարի Զ. Ծնունդ Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և այս կանոն կատարի. Սաղմոս կցուրդ. Տէր հովուեսցէ զիս...», կվերջանայ. «Յիշատակ Պետրոսի և Պաւղոսի յիւր ամիսն գիտ. Սուրբ առաքելոցն Յակովբայ և Յովհաննու»։*

*բ. 56բ—67բ.* Մաշտոց։ *Կբովանդակե «Կանոն հաղորդ տալոյ» և «Կանոն Զամենայն վախճանելոյն ի Քրիստոս»։*

*գ. 68բ—77ա.* Տօնացոյց։ *Շատ համառոտ.* «Աւետարանացոյց և ժամակարգութիւնք կարգեալ ըստ սրբոյ Լուսաւորչին աթոռոյ, զոր ընկալեալ սրբոյն Սահակայ և հասուցին առ մեզ նախնիքն մեր»։ *Այս բաժինը կբովանդակե Աստվածահայտնության ճրագալույցեն մինչև խաչի տոնը։*

*դ. 77ա—78ա.* «Դաւանութիւն սուրբ Երրորդութեան, զոր ասացին սուրբ ժողովն որ ի Նիկիա, և ընկալան ուղղափառ եկեղեցիք հայոց»։ *Հաւատամք, Քարոզ, Աղոթք. «Փառք քեզ անսահման անուն և անզուգական անձնաւորութիւն...»։*

*ե. 78բ—92ա.* «Կանոնն ջուր աւրհնելոյ յաւուր Յայտնութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի», «Աւրհնութիւն ջրոյ, զոր ասացեալ է տեառն Բարսղի արքեպիսկոպոսի Կեսարու Կապադովկեցւոյ։ Աղօթք», «Քարոզ Ժ. Շողակաթին, զոր ետես սուրբ... *(ջնջը կերած է)* զոր ի հիմնարկութիւն եկեղեցւոյ»։

*ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ*

*56ա (գրչի). Քրիստոս Աստուած, ողորմեա գրողի սորա Յոհաննէսի և թող զմեղս նորա, և որ բոլորով սրտիւ ցաւակցաբար խնդրէ, և զնորայն, ամէն։ Արդ աղաչեմ, ով սուրբ հարք և եղբայրք՝ մանկունք նոր Սիովնի, ոյք*

հանդիպիք յայսմ գծի, ոչ մեղադրել մանրութիւն գրի սորա և խոշորութիւն և հաստութիւն, զի վասն անճարակութեան արարի և իմ սիրտս զայս ուզեաց՝ և այս էր կար մեր։ Այլ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զեղկելի գրիչ Յոհաննէս և զծնողսն իմ, եւ առաւել զհարազատ եղբայրիկն իմ զԿոստանդին վանական քահանայ, որ ի տղա հասակի փոխեցաւ ի Քրիստոս և եթող ինձ սուգ անմխիթար, զի ոչ հանդիպեցաք միմեանց վերջին ողջունիւ. որոյ ողորմեսցի նմա տէր Յիսուս Քրիստոս և թողցէ զյանցանս յիշողաց և յիշեցելոցս։ Եւ նմա փառք յաւիտեանս. ամէն։

67բ (գրչի). Յամի եւթն հարիւրերորդի... (տառնավոր արտահայտող բառը ջնջված) սկսեալ վեցերորդի թուաբերութեան Հայոց տումարի*) գրեցաւ ժամագրկունքս վասն ճանապարհի և անճարակութեան, աշխարհիս Կիլիկեցւոց, ի գաւառիս Յախուտ, ի հովանաւոր և սուրբ մենաստանիս Ակներ, ընդ հովանեաւ սրբուհւոյ Տիրամաւր Աստուածածնի և սուրբ առաքելոցն [տեառնեղ]բաւրն Յակոբայ և կենսակիր նշանիս սուրբ Կոստանդեա և այլ աստուածունակ սրբոց, որ հաւաքեալ կան ի սմա։ Ի թագաւորութեան Հայոց Հեթմոյ քրիստոսասէրի և ուղղափառի, որոյ տէր Աստուած տացէ նմա և որդւոց իւրոց Լեւոնի և Թորոսի երկար ժամանակ խաղաղութեամբ վարել զթագաւորութիւն իւրեանց. ի հայրապետութեան տեառն Կոստանդեայ և ի հայրութիւն սուրբ ուխտիս՝ հոգելից ծերունւոյ, ճգնազգեաց և քրիստոսասէր անձին Հայր Մխիթարայ և նորին հայրազատին՝ բարեշնորհ երաժշտին Վարդանայ. գրեցաւ սակաւագիծ մատենաս ձեռամբ յոգնամեղ և եղկելի անձին Յոհաննէսի վշտալից և ոգէտ գրչի, զոր բազում վշտաւք եմ ձեռնամուխ եղեալ ի սա։

78ա (գրչի). Արդ, ես եղկելիս և յոգնամեղս Յոհաննէս՝ գրող սորա, խնդրեմ... ոչ դատապարտել զմեզ, այլ յերես անգեալ աղաչեմ որպէս շան սովեցելոյ, տաք զփշրանս աղաւթից ձեր՝ խնդրելով ի տեառնէ զթողութիւն մեղաց և եղբօր Կոստանդեա։

78բ (ստորին լուսանցքում, գրչի). Զինչ յաւրինակն գտի, զայն գրեցի... (հաջորդ տողն անընթեռնելի)։

79ա (ստորին լուսանցքում, գրչի). Աւրինակն ծուռ էր, ես կրկին գրեցի և իմն տող զայրն միաճղի, զի տեղս վճարեցաւ, թէ դժար թուի, դու շրջէ զթուղթս յետ և ի նշանացն սկսիր և կարդա և մի մեղադրեր։

92բ (վերջին կազմողի). Զվերջին կազմող սուրբ Աւետարանիս զՄաթէոս եպիսկոպոսն յիշեցէք առ Քրիստոս, որ կրկին նորոգեցի։ ՌՃԳ (1654)... (հիշատակարանը կշարունակվի՝ ննջեցյալներու անուններ հիշելով)։

4 (123)

## ՆԵՐՍԻՍԻ ՇՆՈՐՀԱԼՒՈՅ ԲԱՆՔ ՉԱՓԱՒ («ՅԻՍՈՒՍ ՈՐԴԻ»)

Համշէն. Ս. Խաչիկ հոր անապատ ՋՀԷ—1528

Գրիչ՝ Կարապետ երէց։ Ստացող՝ Տէր Յոհաննէս և Տէր Յովսէփ։

*) Դրչութեան թվականի տառնավոր արտահայտող բառը կարող է լինել միայն «տասներորդի», այսինքն ՉԺԶ (1267), ավելի բարձր թիվ լինել չի կարող, քանի որ ձեռագիրս գրված է Հեթում Ա-ի (1226—1270) և Կոստանդին Ա Բարձրբերդցու (1221—1267) ժամանակ։ ԽՄԲ.։

Թերթ՝ *260, դատարկ՝ 1—2, 256։* Նյութ՝ *մագաղաթ։* Մեծությունը՝ *14,7×11,2×5,9 սմ։* Գրությունը՝ *միասյուն։* Գիր՝ *բոլորգիր, խորագրերը՝ կարմիր։* Տող՝ *23։* Մանրանկար՝ *3ա, 63ա, 107բ կպարունակեն կարմիր, կապույտ և կանաչ գույներով նկարներ։* Պահպանակ՝ *մագաղաթյա, սկզբում 2 թերթ, իսկ վերջավորության՝ 1։* Կազմ՝ *կաշեպատ տախտակ, դրոշմազարդ։*

Ծանոթ. *Կազմի առաջին փեղկի աստառի վրա կա* Henry White-*ի պատկանած ըլլալու պիտակ մը։ Կա նաև արձանագրություն մը, ըստ որու ձեռագիրս* John Frederick Lewis-*ի կողմե նվիրված է ձեռագրատան 1937-ին։*

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*ա. 1—60.* Տեառն Ներսիսի Նուէր մաղթանաց ներշափական տաղիւ ավոդին բանից, բղձումն աղաւթից ներանձնական հոգոց, զարթուցելոյ մտաւք ի թմբրութենէ կրից, յիշատակաւ անցելումն իրի ներկայի և ապագայի. յոդրումս հեծութեան սրտի. խաւսք ընդ աստուծոյ. *Յիսուս Որդի Հօր միածին...*

*բ. 60—62.* Յիշատակարան երգողի բանիս. *Ի վեցհարիւր թուական...*

*գ. 63—107.* Տեառն Ներսիսի Բան հաւատոյ ոտանաւոր տաղիւ չափոյ. *Խոստովանիմ Աստուած ըզՀայր...*

*դ. 108—133.* Շարագրութիւն Հոմերական վիպասանութեամբ սակս Հայկազանցն սեռի և Արշակունեացն զարմի՝ ի սկզբանցն մինչև ի վախճան. առ ասացեալ Ներսէսի եղբաւր կաթողիկոսի Հայոց տեառն Գրիգորիսի յիւրականսն նախնիս ի համբակութեան ելով տիս. *Պարտական է Հօր որդի...*

*ե. 134—158.* Պատմութիւն ազգիս Հայոց. գրեալ բանիւ յոտին չափոց.

*զ. 158—189.* Բան բարառնական, տաղիւ չափեալ հոմերական, խաւսեալ բանիւ ողբերգական. վասն եղեսեայ մեծի առման, ի թուականի հինգ հարիւրի և իննսուն ընդ երեքի, քսան և երեք դեկտեմբերի, յերրորդ ժամու յաւր շաբաթի. *Ողբացէք եկեղեցիք...*

*է. 190—194.* Առ սուրբ հրեշտակսն և հրեշտակապետսն Միքայէլ և Գաբրիէլ և առ ամենայն հրարուն և երկնային սուրբ զաւրութեան. *Այլ պաղատիմք Հոգեղէնսդ...*

*ը. 195—197.* Աղաւթս հասարակաց ամենայն հաւատացելոց, զոր պարտին աղաւթել յամենայն ժամ. *Հաւատով խոստովանիմ... (24 համար)։*

*թ. 198—209.* Ներբողական կենսատու սուրբ խաչին, առ ի սրբոյ հաւրէն մերմէ Դաւթէ Անյաղթ փիլիսոփայէ. ասացաւ ոտանաւոր չափով ստանաւոր եղաւ. *Բարձրացուցէք զՏէր Աստուած մեր միաբան...*

*ժ. 209—225.* Գովեստ ներբողական պատմագրաբար Յաղագս փառուց մեծի հայրապետին տեառն Ներսէսի Հայոց կաթողիկոսի.

*ժա. 225բ—226.* Զաւրութիւն յոտանաւոր բանիցս.

*ժբ. 227—229.* Սուրբ և իմաստուն վարդապետին Յոհաննիսի Երզնկացոյն արարեալ այլաչափ տաղս ի խնդրոյ բարեպաշտ իշխանին Ապլղրի՝ ըստ նախագիծ տաղից տանց. *Յամենահրաշ գործ արարչին...*

*ժգ. 229բ—249.* Նորին դարձեալ Յաղագս երկնի. *Այն որ յառաջ քեզ ճառեցան...*

*ժդ. 251—260.* Տեառն Ներսէսի ասեն Հանելուկ ասացեալ սուրբ զրոցն։

ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ

60 (նախագաղափար).

Ջառ ի բարի գործըս տարտամ
Եւ ի չարեաց տեսակ փարթամ,
Յիշեա զգրող սորին զՎահրամ,
Որ աղաւթիւ ըզսա բղձմամբ։

250 (գրչի). Փառք համագոյ, անբաժանելի և միասնական սուրբ Երրորդութեան՝ Հաւր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, յայժմ...։ Գծագրեցաւ գիրքս, որ կոչի Յիսուս Որդի, զոր ասացեալ է սուրբն Ներսէս Կլայեցին, զոր բացայայտեալ է ի սուրբ մարգարէիցն և սուրբ յԱւետարանէն բանս աղաւթական առ սուրբ Երրորդութիւն, հառաչանաւք արտասուաթոր ի խորոց սրտէ խաւսք ընդ ամենասուրբ Երրորդութեան, ձայնաւոր զոր ուսանին մանկունք եկեղեցւոյ որչափ և կարեն, զի յոյժ գեղեցիկ խրատք են բանք սորին ուսումնակցաց և մտաց բացաւղ գրոց, և հոգոյ ճաշ և կերակուր ի սնունդս ուսումնականաց. ամէն։ Գրեցաւ գիրքս այս ձեռամբ անիմաց և անարհեստ գրչի Կարապետ երիցու՝ ի ժամանակս ծերութեան, ի խնդրոյ սիրասնունդ կուսակրաւն կրաւնաւոր որդոցն իմոց՝ Տէր Յոհաննիսին և Տէր Յովսէփին, զոր տէր Աստուած վայելել տացէ բարի կենաւք, ամէն։ Յիշատակ ինձ և կողակցին իմոց՝ Շահխալիմին և մանկական տիաւք հանգուցելոց ի Քրիստոս որդւոյն իմոյ՝ Սահփանոսին և կրաւնաւոր եղբաւրն իմոյ՝ Աստուածատուր աբեղին և ծնաւղացն իմոց՝ Տէր Յովսէփին և Ըռստակէսին և Եղիսաբեթին, և որդոցն իմոց ամուսնացելոց՝ Վարդան երիցու և Յակոբին, որ ի գդուանաց Ղուպաթ կոչեցին։ Գրեցաւ ի թվին ՋՀԷ (1528) ամին, ի ձուկն կենդանակերպի յունիսի յինն, ի յանապատս Սուրբ Խաչիկ հաւրն և սուրբ Վարդանացն նշխարաց, որ աստ եդեալ են ի պարծանք և ի պահպանութիւն գաւառիս Համաշինոյ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնին և Սուրբ Սիոնին, ի սուլթանութեան Սուլայմանին և փաշայութեան Տրապիզոնոյ Սքանդար փաշային, և բերդորէից մերոց աղայութեան Դարվէշալին և Սիմինաւսին և յեպիսկոպոսութեան Տէր Մարտին։ Ով սուրբ ընթերցողք և եղանակողք տառիս, յիշեսջիք ի մաքրափայլ աղաւթս ձեր, և աստուած զձեզ յիշէ յիւր միւս անգամ սուրբ գալուստն։ Եւ Քրիստոսի փառք յաւիտեանս։

5 (115)

ԱՒԵՏԱՐԱՆ

Սանահին ՋԾԳ—1504

Գրիչ՝ Մկրտիչ։

Թերթ՝ 290։ Նյութ՝ թուղթ։ Մեծությունը՝ 24,5×18×6,1 սմ։ Գրությունը՝ երկսյուն։ Գիր՝ բոլորգիր։ Տող՝ 21։ Մանրանկար-տերունական 7 (Հիսուս կուսուցանե տաճարին մեջ, Հարուցյալ փրկիչը, Մուտք Երուսաղեմ, Ոտնալվա, Գաբրիել հրեշտակապետ, Հարուցյալ փրկիչը և Հոգեգալուստ), ավետարանիչ՝ 4 (յուրաքանչյուր Ավետարանի սկզբում՝ Մատթեոս, Մարկոս, Ղուկաս, Հովհաննես), կիսախորան՝ 4 (Ավետարանների սկզբում), լուսանցազարդեր և

զարդագրեր. յուրաքանչյուր Ավետարան կսկսի մեծագիր զարդագրով մը, որուն կհաջորդեն գունավոր ծաղկագիր սկզբի երկու տողերը: Մանրանկարները իրենց արվեստով կզիջին կիսախորաններուն ու լուսանցազարդերուն. անշուշտ երկու տարբեր ծաղկողներ մասնակցած են: Գույները՝ կարմիր, կանաչ, կապույտ, դեղին, մանիշակագույն, սև և ճերմակ. ոսկի գործածված չէ: Պահպանակ՝ չորս թերթ մագաղաթ, երկու սկիզբը և երկու վերջավորության, մասն հնագույն երկաթագիր Ավետարանի մը. կբովանդակե Մատթեոս, Թ, 38—ԺԲ, 15: Կազմ՝ կաշեպատ տախտակ: Հանգամանք՝ լավ. կարգ մը թերթեր իրենց մաշած անկյուններուն վրա կկրեն նորոգման նշաններ, ոմանց ալ վերի լուսանցքները խոնավության պատճառով մաշած: Հիշատակարան՝ ունի:

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ա. Աւետարան ըստ Մատթէոսի:
բ. Աւետարան ըստ Մարկոսի (չունի՝ ԺԶ, 9—12):
գ. Աւետարան ըստ Ղուկասու:
դ. Աւետարան ըստ Յովհաննու (ունի՝ «Իրք կնոջն շնացելոյ»):

### ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ

285ա—289ա (Հետագայի). Տէր Յարութիւն աբեղայիս եղբայր Անդրիասի դուստրն Խանփէր ու Թիվնայ, որ Աստուած տուեց, եղև թվին ՌՄԽԳ (1793) սեպտ[եմբեր]ի 30, սուրբ Գէվորքայ շաբաթ օրն:

(Գրչի). ...Եւ նաեւ գրել հալալ արդեանց իմոյ, ես պարոն Մելիտոնս՝ թոռն Խալթուղի: Եւ նաեւ գրել յիշատակ ինձ և ծնաւղացն իմոց և ամենայն ազգականացն, հայրն իմոյ՝ Խաչատուր քահանային, որ սրախող մահուամբ կատարեցաւ ի ձեռն անաւրինաց, և մայրն իմոյ՝ Թամարկին...

Արդ, եղև կատարումն սուրբ Աւետարանիս ի թվականութեան Հայկազեան տումարի ՋԾԳ (1504), ի դառն և ի չար ժամանակի, որով նեղիմք ի յանաւրինաց՝ ի բռնակալութեան աշխարհիս Հայոց և Պարսից, զոր եկն և եհաս ի վերայ մեր վասն ծովացեալ մեղաց մերոց: Եղև աւերումն աշխարհիս, և փոխեցան աշխարհէ աշխարհ և տեղաց ի տեղ: Եւ այլք ի ամուրս և ի ծերպս վիմաց բնակէին. և էր սով սաստիկ, որ ոչ վաստակել կարէին, և ոչ զսերմանածն ժողովել: Եւ եկն ազգն այն, որ զնետին գուշակն ունէր, որոյ անուն Սուֆի կոչիւր. էառ զտունն Աղուանից, և կոտորեաց մինչև մերձ Կասպիական, և անդի դարձաւ ի Հոլաւ և առաւ զԹավրէժ, և սփաթշահն փախստական արար, և զերկիրն ընդ իշխանութեամբ էած, և զհարկապահանջութիւն ի վերայ եդեալ, և զազգս Հայկազան այնու մաշեաց և փախստական արար մինչև Հիւսիսական լերինն՝ ընդ իշխանութիւն Վրացն: Եւ զմահմետականն ի սուր սուսերի մաշեաց, և զայլն յինքն դարձոյց, և շատ երկիր և աշխարհ անբնակ արար: Եւ էր վշտի ազգս ամենայն և տարակուսի կայր, և ոչ գիտէին թէ զինչ լինէին: Եւ երանի տային մեռելոցն և ասէին բլրոց, թէ՝ ծածկեցէք զմեզ, և լերանց, թէ՝ անկերուք ի վերայ մեր: Զի ոչ կարեմք գրով արկանել զաղէտ լալոյ և տարակուսանք քրիստոնէից, թէ զինչ լինիցին: Զյոյսն ի Աստուած կալով և և նեղութեանց համբերելով, և զարքունական հրաման ի միտ բերելով, թէ՝ ով համբերեսցէ, ի սպառ նա կեցցէ, միւսն թէ՝ զով սիրէ Տէր, խրատէ, տանջէ

ըամենայն որդիս, զոր ընդունի։ Եւ ի Հայրապետութեան տեառն Ներսիսէ աթոռակալէ, մեր սուրբ Լուսաւորչէ ի Սուրբ Էջմիածնին։

Արդ, ի յայս և սոյն ժամանակի եղև յաւարտումն սուրբ Աւետարանիս ի դուռն մարս լուսոյ Սուրբ Աստուածածնիս Սանահնոյ և Հրաշափառ Սուրբ Կաթուղիկէիս, ի յառաջնորդութեան սուրբ ուխտիս Տէր Բարսեղ կրաւնաւորին։ Եւ զիս զանարժան գրիչ Մկրտիչ սուտանուն. Բարսեղ եպիսկոպոսն, և զեղբայրն իմ՝ Գրիգոր կրաւնաւորն, որ տարաժամ մահուամբ առ Քրիստոս փոխեցաւ և մեծ կսկիծ եթողեր. Նորին ազգաւս կատարեցի զԱւետարանս, որ արտասուս չէր թողուլ դաշուերս, որ սաստին գրէի։ Ընդ նմին յիշեցէք և զհամայրէն եղբարքս զմիաբան սուրբ ուխտիս՝ զՏէր Արիստակէս վարդապետն և զՏէր Մանուէլ մահդասին, և զձեռնասուն և զնորաբողբոջ կրաւնաւորն մեր զԱւետիսն, որ բազում աշխատութեամբ ծառայեաց մեզ։

## 6 (116)

## ԱՒԵՏԱՐԱՆ

(Հայերէն և հայատառ թուրքերէն)

ԺԷ—XVII

Գրիչ և բազմանիչ՝ Ազարիա տիրացու և Գասպար՝ որդիք Խոճայ Յոհանճանի։

Թերթ՝ 414։ Նյութ՝ Թուղթ։ Մեծություն՝ 21,2×16×7,1 սմ։ Գրություն՝ երկսյուն։ Գիր՝ նոտրգիր։ Տող՝ 26։ Պահպանակ՝ թուղթ, երկու թերթ սկիզբը և հինգ՝ վերջը։ Կազմ՝ կաշեպատ տախտակ, զույգ կապեր կփակեն մասյանը։ Հանգամանք՝ գերազանց։ Մանրանկար-Ավետում՝ 1բ, Մոգերու երկրպագություն՝ 2ա, Տեառնընդառաջ՝ 3բ, Մկրտություն՝ 4ա, Քրիստոս աշակերտներուն մեջ՝ 5բ, Ղազարու հարությունը՝ 6ա, Մուտք Երուսաղեմ՝ 7բ, Վերջին ընթրիք՝ 8ա, Ոտնալվա՝ 9բ, Մատնություն՝ 10բ, Քրիստոս կկրե իր խաչափայտը՝ 11բ, Խաչելություն՝ 12ա, Հարություն՝ 13բ, Քրիստոս կօրհնե սուրբ կույսը՝ 14ա, Հոգեգալուստ՝ 15բ, Վերջին դատաստան՝ 16ա, Մատթեոս՝ 30բ, Մարկոս՝ 136բ, Ղուկաս՝ 206բ, Հովհաննես՝ 324բ։ Խորաններ՝ 17բ—28ա, հարուստ և գեղեցիկ, ոսկյա խորքով և կարմիր, ճերմակ, գորշ, կապույտ գույներով, թռչնային և բուսական նկարներով, ինչպես սիրամարգ, աքաղաղ, արագիլ և ձուկ։ Կիսախորաններ՝ 31ա, 137ա, 207ա, 325ա, խորաններու պես գեղեցիկ ու հարուստ։ Լուսանցազարդեր՝ 208 հատ, որոնցմե 76-ը մանրանկար, բազմազան ու գունագեղ, Մատթեոսի Ավետարանի աջակողմյան լուսանցքին 12 դեմքեր՝ շրջանակներու մեջ առնված զույգ առ զույգ, կներկայացնեն Իսրայելի 12 ցեղերը, գագաթին Մարիամ՝ Հիսուս մանուկը գրկին։ Միայն Մատթեոսի Ավետարանն ունի թվով 31 լուսանցազարդ, մեծավ մասամբ տերունական պատկերներ. Հովսեփ՝ 35բ, Հովհաննես Մկրտիչ՝ 36բ, Հիսուս և փարիսեցի՝ 43բ, Հիսուս և բորոտ՝ 52ա, Հիսուս և Մատթեոս՝ 55բ, Հիսուս և իշխան՝ 57ա, Հիսուս և կույրք երկու՝ 57բ, 96բ, Հիսուս բազկատարած՝ 64բ, Հիսուս և դիվահար՝ 67ա, Հիսուս և քանանացի կին մը՝ 80ա, Հիսուս և ծնրադիր այր մի՝ 85բ, Հիսուս թզենու մոտ՝ 98բ, Հիսուս երեք աշակերտներու հետ՝ 121ա, Հուդա կախված ծառեն՝ 126ա, Հովսեփ Արեմաթացի՝ 131ա։

Մյուս Ավետարաններում բովանդակածը նույնպես նմանօրինակ զարդանկարներ են։ Զարդագրեր՝ թռչնագիր և ամեն համարի սկիզբը ոսկետառ։ Հիշատակարան՝ ունի։

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Կբովանդակե Չորս Ավետարանները՝ հայատառ թուրքերեն թարգմանությամբ հանդերձ։

7 (117)

ԱՒԵՏԱՐԱՆ

ՌԺԲ—1563

Թերթ՝ 298։ Նյութ՝ մագաղաթ։ Մեծություն՝ 12,1×8,2×4 սմ։ Գրություն՝ երկսյուն։ Գիր՝ մանր բոլորգիր։ Տող՝ 23։ Պահպանակ՝ մագաղաթյա, երկու սկիզբը, երկու վերջը։ Կազմ՝ կաշեպատ տախտակ։ Հանգամանք՝ շատ լավ։ Հիշատակարան՝ չունի։ Մանրանկար՝ չորս ավետարանիչներ, խորաններ, կիսախորաններ, լուսանցազարդեր և զարդագրեր։ Մատյանիս համաբարբառային կանոնները բովանդակող սկզբի թերթերը պատրաստված են նուրբ և գեղեցիկ մանրանկարներով և լուսանցազարդերով, կենդանական և բուսական նկարներով, վառ գունավորումներով. ընդհանրապես ոսկի հատակով և ծաղկային ոճ գործածված է լուսանցքի զարդերում համար։ Հայտնի կերևին թռչուն, աքաղաղ, սիրամարգ, գազան, արմավենի։ 14-րդ թերթի երկրորդ էջը կներկայացնե Մատթեոս ավետարանիչի մանրանկարը, հրեշտակ մը կողքին. Մատթեոս կապույտ պարեգոտով և կարմիր, ոսկեզօծ շուրջառով, նստած է գահույքի վրա՝ ոտքերը դրած պատվանդանին. ետին ոսկի խորք, տուն մը երեք բարձր կարմիր տանիքներով և աշտարակ մը։ 15-րդ թերթի առաջին էջը Մատթեոսի Ավետարանի սկիզբն է՝ զարդարված ծաղկավոր կիսախորանով մը, ոսկի, կարմիր, կապույտ, ճերմակ և կանաչ երիզներով։ Լուսանցքին տակը դեմքեր՝ ձեռքերնին մագաղաթներ. վերը Մարիամ Աստվածածին՝ գիրկը մանուկ Հիսուսը։ «Գիրք ծննդեան»-ի «Գ» տառը Գաբրիել հրեշտակապետն է, փողը բերանին և Ավետարանը ձեռքին։ Մնացյալ վեց տառերը թռչնագիր են, շատ նուրբ և գեղեցիկ, կապույտ, կանաչ գունոց ներդաշնակությամբ։ Մատենիս ամեն գլխագիր ոսկեգիր է, ամեն գլխի առաջին գիրը մանրանկար մը՝ նույն ներդաշնակությամբ։ Լուսանցազարդերեն 46-ը ծաղկային են, 6-ը՝ թռչնային, 1-ը՝ հասկ, 1-ը՝ թզենի և 1-ը՝ տաճարի մուտք, բոլորն ալ կապույտ, ոսկի, կանաչ, կարմիր, ճերմակ, նարնջի գույներով և ներդաշնակությամբ։ Նույն լուսանցազարդերը մեծ համեմատությամբ կրկնված են մյուս երեք Ավետարաններուն մեջ ալ։

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Մատյանս կբովանդակե Չորս Ավետարանները՝ իրենց ցանկերով, նախադրություններով և համաբարբառ կանոններով։

## ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ

*Ձեռագրիս հիշատակարանը չէ պահպանված։ Հովհաննու Ավետարանի նախագրության վերջավորությանը (238բ) կա նախադասություն մը. «Աւրհնութիւն՝ որ կարդայ, գովութիւն՝ որ լսէ, փառք տուողին և յիշատակ գրչիս. ամէն»։ Կազմի երկրորդ փեղկի ներքին մասին կեդրոնը մելանով, ավելի խոշոր քան բուն գրչությունը, հավանաբար գրչին ձեռքով, գրված է՝ «ՌԺԲ» (1563), որ ձեռագրիս գրչության թվականը կենթադրվի։*

8(121)

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

Դրազարկ. Երուսաղեմ ՁԿԳ—1314

Գրիչ՝ *Ստեփանոս (Դրազարկ), Ստեփանոս և Կարապետ դպիր (Երուսաղեմ)։* Ստացող՝ *Կիրակոս քհյ (Երուսաղեմ)։*

Թերթ՝ *227։* Նյութ՝ *մագաղաթ։* Մեծություն՝ *11,5×8,2×5,3 սմ։* Գրություն՝ *միասյուն։* Գիր՝ *բոլորգիր։* Տող՝ *16։* Մանրանկար՝ *չունի. կան մեջ ընդ մեջ թռչնագիր կարմիր գույներով պարզ լուսանցազարդեր։* Պահպանակ՝ *չունի։* Կազմ՝ *կաշեպատ տախտակ, մաշած։* Հանգամանք՝ *գոհացուցիչ, սակայն սկզբեն և վերջավորութենեն որոշ թերթեր կպակսին։*

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*1ա—16բ. Ձեռագրիս առաջին էջը կսկսի Բարեկենդանի կյուրակեի կանոնագլուխ սաղմոսի* «զՔեզ Քրիստոս գովէ եկեղեցի փրկեալ Քո սուրբ» *համարով։ Հետևաբար տասնյակ մը թերթեր սկզբեն կպակսին։ Ապա՝* «Թագաւոր յաւիտեան»։

*17ա—35բ. «Ալէլուք»։*

*35ա—44բ. «Առաւօտու երգեր»։ 42բ-ի ստորին լուսանցքին տարբեր գրչի մը կողմե ավելցված է* «Ոչ են բանք և ոչ են խօսք» *սաղմոսը։*

*44բ—67ա. Հարց ապաշխարութեան։*

*68ա—99ա. Ճաշու ժամամուտք կարգաւ։*

*99բ—108ա. Մեսեդիք ճաշու (պահոց և յարութեան)։*

*109ա—142բ. Ալէլուք ճաշու կարգաւ։*

*142բ—143ա. Սրբասացութիւնք։*

*144ա—150բ. Պատարագ։ Կսկսի* «Սուրբ Աստուած»*-են և կվերջանա* «Նշան ի բարութեանց քոց. Տէր»*-ով։*

*150բ—159ա. Խոնարհեցո աղուհացից։*

*159ա—161բ. Խոնարհեցուք հասարակաց։*

*161բ—179ա. Աւագ մեսեդիք աղուհացից և մեսեդիք տօնից։*

*181ա—198բ. Մեսեդիք ծննդեան (յարութեան, մարտիրոսաց, ապաշխարութեան)։*

*198բ—218բ. Ուղղեցիք կարգաւ ի փառս Աստուծոյ։*

*218բ—219ա.* «Սուրբ Աստուած» *և* «Վասն ի վերուստ»։

Ծանոթ. Կազմողի գրչի հիշատակարանը (219բ), ապա՝ ա) Աւետարան բժշկութեան, բ) Ընթերցուածք յԱռակաց, գ) Ընթերցուածք յԵսայեայ, դ) Ընթերցուածք ի Գաղատացւոց թղթոյն, ե) Ընթերցուածք ի Գործոց Առաքելոց, զ) Ընթերցուածք յԵսայայ, է) Ընթերցուածք ի Կաթողիկեայ թղթոյն Պետրոսի։

## ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ

219բ. Փառք ամենասուրբ երրորդութեան յաւիտեանս յաւիտենից. ամէն։ Գրեցաւ եղանակաւոր տաղիկս որ կոչի Մանրուսումն, ի թվին Հայոց ՉԿԳ (1314), ի թագաւորութեան Աւշնի և ի հայրապետութեան Տէր Կոստանդնի։ Բայց եղև սկիզբն սորա որ ի ուխտն Դրազարկ՝ ձեռամբ եղբաւր ումեմն Ստեփանոս անուն, և ոչ աւարտեալ։ Իսկ զմնացորդ սորա աւարտեցի ես անարժան և վերջին սուտանուն գրչակ Ստեփանոս յերկ(այսպես), ի սուրբ քաղաքս Երուսաղէմ, ի վանս որ կոչի Սուրբ Հրեշտակապետք, ի խնդրոյ հոգևոր եղբաւր մերոյ՝ պատուական քահանայի Կիրակոսի։ Արդ, աղաչեմ զամենեսեան, որք աւգտիք ի սմանէ՝ ուսմամբ կամ աւրինակելով, յիշեսջիք ի մեղաց թողութիւն զյառաջասացեալ եղբայրն Կիրակոս և զծնողս նորա, և զեղբայրս և զուսուցիչ և զամենայն անգայինս՝ զկենդանիս և զհանգուցեալս, և զեղկելի աշխատողըս Բ(2) Ստեփանոս։ Եւ Աստուած որ առատ է ի տուրս ողորմութեան, յիշողաց և յիշելեացս [առ]հասարակ ողորմեսցի. և նմա փառք յաւիտեանս։ Այլ թէպէտև խոշորագիծ է, սակայն ի ճշգրիտ և յուղ[ղ]ակի աւրինակէ գրեցաւ, որպէս և երևի։

Ծանոթ. Ձեռագրիս վերջին թերթին վրա շատ կարճ հիշատակարանի մը մեջ կհիշվի նաև Կարապետ դպիր մը՝ որպես գրիչ։ Հավանաբար հավելյալ նյութերու գրիչն է։

## 9(Ւ24)

## ՀՄԱՅԻԼ

Կ. Պոլիս ՌՄԿԵ—1816

Գրիչ՝ Աբրահամ Գամելվանեան Խաւաձորեցի։ Ստացող՝ Կարապետ՝ որդի Վանեցի Մախսուտ Գարասեֆերեանի, հետագայի ստացող՝ Պետրոս՝ որդի Մարիամի։

Թերթ՝ 1 (փաթեթ)։ Նյութ՝ թուղթ։ Մեծություն՝ 462×8 սմ։ Գրություն՝ միասյուն։ Գիր՝ մարուր նոտրգիր։ Հանգամանք՝ սկզբեն մաս մը կպակսի, ընդհանրապես հինցած, ծակծկած և շատ տեղեր նորոգված։ Հիշատակարան՝ ունի։

Մանրանկար՝ Խաչելություն, Մատթեոս ավետարանիչ, Մարկոս ավետարանիչ, Ղուկաս ավետարանիչ, Հովհաննես ավետարանիչ, Սուրբ Սարգիս և որդին՝ Մարտիրոս, Սուրբ Գևորգ։ Ասոնցմե զատ կան յոթ կանաչորակ և ոսկեզօծ բոլորակներ՝ առնված զույգ շրջագծերու մեջ, հինգուկես սմ տրամագիծով, իրարու տակ դրված և մեջը գրված.

ա. Այս բոլորակս զմարդու զաղանդն խափանէ...

բ. Այս բոլորակս սէր առնէ...

գ. Այս պօլօրակս զանծնունդն ծնունդաւոր առնէ...

դ. Անուամբ Աստուծոյ այս զմտամոլոր մարդն մտածական առնէ...

ե. Այս՝ ինչ խնդիրք ունիս ու աւագ կամ թագաւոր կամ դատաւորաց քով մտանես անահ...

զ. Այս ի բազուկդ կապէ՝ ամենայն բանդ յաջողի...

է. Այս բոլորակս ի վրադ պահես, զինչ որ յուսաս՝ կատարի Աստուծոյ հրամանով...

Եվս ութերորդ բոլորակ մը՝ Հովհաննես ավետարանչին մանրանկարեն ետք. «Այս բոլորակս զթշնամին խափանէ...

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ա. Ներսեսի Շնորհալու «Հաւատով խոստովանիմ» աղոթքը, որ թերի մասին պատճառավ կսկսի «զի ի ծննդենէ սուրբ աւազանին» բառերով։

բ. «Մախան զօրաւոր ընդդէմ արհաւրաց գիշերայնոց՝ ասացեալ սրբոյն Գրիգորի Նարեկացւոյն. Ընկալ քաղցրութեամբ...»։

գ. Գրիգորի Նարեկացու «Որդի Աստուծոյ կենդանւոյ օրհնեալ...»։

դ. «Աղօթք վասն կապանաց դիւաց և կախարդաց. Թագաւոր հզօր, ապաւէն ծարաւելոց, փրկիչ նեղելոց...»։

ե. «Բժշկութեան Աւետարան ըստ Մատթէոսի» (Թ, 27—34)։

զ. «Աղօթք սրբոյն Գէորգայ լիցի պահապան ծառայիս Աստուծոյ...»։

է. «Աղօթք սրբոյն Փոկասու եպիսկոպոսի. Սուրբն Փոկաս խնդրեաց յԱստուծոյ...»։

ը. «Գիր վասն գլխացաւի և նուզլայի»։

թ. «Գիր վասն ատամացաւի... Յիշեալ զսուրբ հրեշտակապետն Անթիպայ...»։

ժ. «Գիր վասն պահպանութեան...»—անձնական աղոթք մը՝ ստացող Կարապետի կողմե։

ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ

ա («Որդի Աստուծոյ կենդանւոյ օրհնեալ» աղոթքեն ետք). Այս Հմայիլս Վանեցի Կարապետին է, թւ. ՌՄԿԵ (1816)։

բ («Թագաւոր հզօր» աղոթքեն ետք). Եւ լիցի պահապան ծառային Աստուծոյ Կարապետին... (Նման հիշատակումներ կան նաև մյուս աղոթքներուն վերջավորությանց)։

գ (Աջակողմյան լուսանցքին, մեկ տողի վրա գրված). Կախարդութիւնք զչար ակն և զչար լեզու և ամենայն կախարդութիւնք կապեսցի ի դէմ ծառայիս Աստուծոյ Կարապետին։ (Կարմրով). Արդ եղիցի խափանումն Աստուծոյ զօրութեամբ ամենայն կապք և կախարդութիւնք... ի դէմ ծառայիս Աստուծոյ (Կարապետի անունը ջնջված և գրված՝ «Մարիեամին որդին Պետրոսին»)։

դ (Հմայիլիս վերջավորությունը). Թվին ՌՄԿԵ (1816) դեկտեմբերի ամսեան ԺԶ (16) օրին աւարտեցաւ այս ծաղկաւէտ Հմայիլս ձեռամբ խաւնձորեցի Գամելվանեան մահտեսի Աբրահամին: Վասն որոյ, հարք և եղբարք, ով որ զայս Հմայիլս ընթեռնու, միով Հայր մերիւ յիշեցէք զպատրաստական ծառայս ձեր, որ և դուք յիշեցողքդ յիշեալ լինիք առաջի անմահ գառին Աստուծոյ:

ե (Կարմիր մելանով). Թվին ՌՄԿԵ (1816) դեկտեմբերի ամսեան ԺԶ (16) Ըստանպօլ ձեռամբ անարժան մահտեսի Աբրահամին գրեցաւ այս: Այս Հմայիլս Վանեցի Կարապաֆարենց Մախսուտի որդի Կարապետին է. Աստուած բարեաւ և խաղաղութեամբ վայելում տացէ. ամէն:

## 10 (120)

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

ԺԶ—XVI

Թերթ՝ 222: Նյութ՝ մագաղաթ: Մեծություն՝ 11,2×8×5 սմ: Գրություն՝ միասյուն: Գիր՝ մանր բոլորգիր: Տող՝ 20: Մանրանկար՝ չորս, ունի հարուստ լուսանցազարդեր: Պահպանակ՝ թղթյա երկու: Կազմ՝ կաշեպատ տախտակ: Հանգամանք՝ թերթերը թեև լավ վիճակի մեջ են, սակայն գրերը տամկացած և սրբված են, շատ հաճախ անընթեռնելի: Հիշատակարան՝ չունի:

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Ձեռագիրս ժամագրքի վերածված Սաղմոսագիրք մըն է: Օրինակ մը կարելի է տալ ըստ հետևյալին. 22բ թերթին կեսեն կսկսի մաղթանք՝ «Քրիստոս է իմ Աստուած, և փառաւոր առնեմ զսա...», ապա՝ «Բարեխօսութեամբ սրբոյ Աստուածածնին և վասն սուրբ խաչի քո պատուականի, Տէր, ընկալ...», հետո՝ քարոզ. «Վասն ի վերուստ...», աղոթք. «Տէր տուրնջեան...», մաղթանք. «Սաղմոսիւք և օրհնութեամբ...», և ապա՝ «Հայր մեր...»: Նույն շարադրանքը Գուրգա Խ-ի վերջավորության:

150-րդ սաղմոսեն վերջ կկարդանք. «Այս սաղմոս ինքնագիր Դաւթայ է արտաքս թուոց... Փոքր էի ես ի եղբարս և կրտսեր՝ ի տան հօր իմոյ...»: Այսպես յոթը համար կշարունակվի: Ապա՝ «Աղօթք Մանասէի թագաւորին. Տէր ամենակալ...», «Աղօթք տեառն Ներսէսի Հայոց կաթողիկոսի ասացեալ. Հաւատով խոստովանիմ...»: Ձեռագիրս կավարտի «Աղբիւր անմահութեան» համարի «ապաշխարութեամբ ուղ» բառերով: Մնացյալը կպակսի:

## 11

## ՃԱՇՈՒ ԱՒԵՏԱՐԱՆ

Ձեռագրատանս մեջ ի պահ է դրված նաև հայերեն տպագրյալ Ճաշու Ավետարան մը. Աւետարան Տեառն Մերոյ Յիսուսի Քրիստոսի: Տպագրեցեալ ի տպարանի Յօհաննէսի և Յակոբու: Ի թուին Հայոց 1218 (1769) մայիսի Դ. (4), Իսքանպոլ Կ. Պոլիս: Ունի հետևյալ հիշատակարանը. «Յիշատակ հանգուցեալ մահտեսի Աբրահէլի և կենդանի մահտեսի Էլմասին ի դուռն Սուրբ Լուսաւորիչ»:

*Ավետարանս արծաթապատ է։ Առաջին փեղկի վրա փորագրված է խաչելության և տասներկու առաքյալների պատկերները, իսկ երկրորդ փեղկի վրա՝ Քրիստոսի հարությունը։*

## Գ. ՄՈՆՐԵԱԼԻ MC GILL ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐԸ

*Մոնրեալի* Mc Gill *համալսարանի կենտրոնական մատենադարանի ձեռագրատան մեջ պահված են երկու հայերեն ձեռագրեր, զորս տեսնելու և ուսումնասիրելու առիթը ունեցանք համալսարանին մեջ կրոնագիտության ուսանող պրն. Հարություն Փալանճյանի միջոցաւ։ Հարկ է մեր շնորհակալությունը հայտնել նաև* Mrs. E. Lewis*-ի՝ ձեռագրատան տեսչուհիին, որուն պատրաստակամությամբ կարելի եղավ ցուցակագրել ձեռագիրները և այդ ցուցակագրումը հրատարակել։* Mrs. Lewis*-ի մոտ պահված թղթակցութենե մը հայտնի կըլլա, որ ցարդ ձեռագիրները պրն. Փալանճյանե զատ ոչ ոք չէր տեսած և թե միայն անոնց* xerox*-ով օրինակված էջերը տրամադրված են հայտնի հայերենագետ* Dr. Michael Stone*-ի։*

1 (2)

*ԺՈՂՈՎԱԾՈՒ*

ԺԷ—XVI

Հետին կազմող՝ *Յակոբ տիրացու Շահինեան (1813)։*

Թերթ՝ *158։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *14,5×10×4,5 սմ։* Գրություն՝ *միասյուն։* Գիր՝ *նոտրգիր։* Մանրանկար՝ *չունի, միայն գլխագրերը՝ թռչնագիր կարմիրով և կապույտով։* Հանգամանք՝ *գոհացուցիչ։*

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*1.* Աղօթք, Քարոզք, Տեսիլք

*ա. 1—7ա. Սկզբեն պակասավոր. կրովանդակե՝ Երատ ապաշխարութեան։*

*բ. 7բ—15ա.* Տեսիլ սրբոյն Գրիգորի Հայոց սուրբ Լուսաւորչին՝ Հարցմունք և պատասխանք հրեշտակապետին Վասն հոգոցն արդարոց և մեղաւորաց:

*գ. 15բ—28ա.* Տեսիլ Աստուածածնին ի լեառն Ձիթենեաց, զոր յայտնեաց նմա հրեշտակապետն վասն մեղաւորաց, թէ որպէս տանջեն:

*դ. 28բ—31ա.* Քարոզ վասն գալստեան Քրիստոսի և դատաստանի նորա:

*ե. 32բ—39բ.* Քարոզ վասն գալստեան Քրիստոսի: Այս է պատմութիւն վասն գալստեանն Քրիստոսի. յաւուր ուրբաթուն երկինք և երկիր շարժի, տէրունական խաչն երևի ի կողմն յարևելից...

*զ. 40—46ա.* Քարոզ վասն ողորմութեան: *Որպէս ասէ Դաւիթ մարգարէն. Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն...*

*է. 46—54բ.* Քարոզ վասն ննջեցելոց: *Յայնժամ ննջեցելքն բազում չարիս գործեցին...*

*ը. 55—68բ.* Այս է պատմութիւն նախաստեղծին, քանի ստեղծ տէր Աստուած զԱդամ և զեւա մեծապէս փառօք և եդ ի մէջ դրախտին:

*թ. 68բ—74 բ.* Այս է պատմութիւն Կայենայ և Աբելայ:

*ժ. 74բ—79ա.* Վասն աւետեացն Մէքայ: *Եւ քաղցրացաւ Տէր ի վերայ Ադամայ...*

*ժա. 79ա—86ա.* Քարոզ վասն աղօթից Գրիգորի ասացեալ: *Այսպէս ասէ Տէրն մեր Յիսուս Քրիստոս. Արթուն կացէք...*

*ժբ. 96ա—91ա.* Ովհաննու Մանդակունեցուն ասացեալ վասն անշահ մեղացն և հայհոյողաց: *Երկերուք, երկերուք, զարհուրեցէք և սասանեցէք...*

*ժգ. 91ա—92ա.* Աղօթք պահպանութեան ի Առաքել վարդապետէ (ծայրակապ՝ «Տէր Առաքելայ ասե»). *Տէր և փրկիչ Յիսուս Աստուած,/Հօր համագոյն և լոյս փառաց...*

*ժդ. 92ա—93բ.* Դարձեալ ոտանաւոր նոյն տէր Առաքելէն (ծայրակապ՝ «Տէր Առաքելայ»). *Տարփմամբ ձայնիւ հառաչանաց,/Առ քեզ գոչեմք Յիսուս Աստուած...*

2. Մանկութեան Աւետարան*

*ա. 94—98.* Յաղագս հրեշտակին յայտնելոյ Յովսեփայ՝ գնալ նոցա փախստական յեգիպտոս, յանօրէն ամբարշտէն Հերովդեայ, զի մի սպանցէ զմանուկն:

*բ. 99—108բ.* Յաղագս վասն Յիսուսի խորտակելոյ զկուռ պատկերն Ապողոնի և զմեհեանն դիւացն և բազմութիւն մարդկան, որ մեռած և յարութիւն որ եղև իսկ: *Եւ Յուսուս յարուցեալ գնաց անդր և եմուտ տաճարն կուռց...*

*գ. 108բ—117ա.* Յաղագս դարձեալ վասն հրեշտակին դառնալոյ Յովսէփայ՝ գնալ նոցա յերկիրն Իսրայէլի և բնակել նոցա յաշխարհին Գալիլեացւոց ի քաղաքն Նազարէթ:

*դ. 117բ—125ա.* Յաղագս վասն ելանելոյ նոցա յեգիպտոսէ և գալ ի կողմանս հարաւոյ յաշխարհս Արաբիոյ, և տղայութիւն զոր առնէր Յիսուս և մահուան, որ եղև յարութիւն մեռելոց: *Մեկնում. Յերկիրն Ասորոց ի քաղաք մի որում անուն էր Շահապրաւ, և Յիսուս էր ամաց հինգ և ամսոց երեք:*

*ե. 125ա—127ա.* Յաղագս վասն փախելոյ նոցա անտի և գնալ նոցա յերկիրն Ասորեստանեայ, ի քաղաք մի որ կոչի Մաքիամ և Յիսուս էր ամաց վեց:

*զ. 127ա—129բ.* Յաղագս վասն երթալոյ նոցա յերկիրն Քանանու և տղայութիւն, զոր առնէր Յիսուս, և մահուան, որ եղև յարութիւն մեռելոյն զոր արար:

*է. 129բ—136ա.* Յաղագս վասն գնալոյ նոցա յերկիրն Իսրայէլի և զործ տղայութեան զոր առնէր Յիսուս, և տալ զնա յուսումն դպրութեան, և մահուանն, որ եղև իսկ յարութիւն որդւոյ թագաւորին:

*ը. 129բ—141բ.* Յաղագս վասն գնալոյ նոցա ի քաղաքն Տապարեայ. տալ զնա ի արուեստ ներկութեան, և տղայութիւն զոր առնէր Յիսուս, և սքանչելեացն զոր արար Յիսուս:

*թ. 142—149ա.* Յաղագս վասն երթալոյ նոցա յԱրեմաթեայ քաղաքի, և տղայութիւն զոր առնէր Յիսուս և մահուան որ եղև իսկ, յարութիւն արար Յիսուս:

*ժ. 149ա—158.* Յաղագս վասն երկմտելոյ նոցա գնալ Արտևան յերիհն, և տղայութիւն զոր առնէր Յիսուս ընդ մանկունսն:

* *Համեմատել* James M. R. The Apocryphal New Testament, p. 83.

2 (3)

## ԱՒԵՏԱՐԱՆ

Զեյթուն ՌՃԾ—1701

Գրիչ՝ *Խաչատուր և Յարութիւն դպիրք։*

Թերթ՝ *295, չգրված՝ 234 և 236, մատենեն անջատված և պատահաբար զետեղված նշյալ թերթերուն տեղը. թերթ 115-ը, որ կբովանդակե «Նախադրութիւնք Մարկոսի Աւետարանի», պետք էր զետեղվեր թերթ 89-են անմիջապես առաջ։* Նյութ՝ *ողորկ մագաղաթ։* Մեծություն՝ *11×8×5 սմ։* Գրություն՝ *երկսյուն։* Գիր՝ *բոլորգիր և առաջնակարգ գեղագրությամբ։* Տող՝ *23։* Մանրանկար—*Մատթեոս՝ 4բ, Մարկոս՝ 89բ, Ղուկաս՝ 148բ, Հովհաննես և Պրոխորոն՝ 237բ, կիսախորան՝ 5ա, 90ա, 149ա, 238ա, կարմիր, կապույտ, դեղին, կանաչ և գորշ գույներով, լուսանցազարդերը՝ տասը, սակայն միագույն բաց-կարմրավ, երբեմն կապտով լեցված, հայկական հարազատ գծերով և ոճով։ Սկզբնատառերը կարմրավ են և յուրաքանչյուր Ավետարանի առաջին գլխի առաջին համարը՝ գլխագիր երկաթագիր։* Պահպանակ՝ *երկու թերթ, մեկ սկիզբը, մեկ վերջը, վերջինս կիսով պատռած։* Կազմ՝ *կաշեպատ տախտակ։* Հանգամանք՝ *լավ։* Հիշատակարան՝ *ունի։*

Ծանոթ. *Ձեռագրին մեջ ներդրված են թղթյա երկու ձեռագիր պատառիկներ՝ ժամագրքե մը ինկած, 10×6,5 սմ չափով, 19 տող ամեն մեկ էջի վրա, և կբովանդակե Ներսես Շնորհալիի «Առաւօտ լուսոյ» երգի «Խորհրդոց գիտող» համարեն մինչև վերջ և սկիզբն «Դասեա, Տէր» կանոնագլխի։ Կավարտի «մինչև յամպս, ալէլուիա, ալէլուիա»-ով։ Հոս գեղեցիկ լուսանցքի զարդ մը գծված է՝ ոսկի, կապույտ և կարմիր գույներով։ Զափազանց գեղեցիկ է կանոնագլխի թռչնագիր «Դ» տառը, առաջին տողը կարմիր, իսկ երկրորդը՝ սև և խազագրյալ։*

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*ա. 1ա—87ա. Աւետարան ըստ Մատթեոսի (ցանկով և նախադրությամբ)։*
*բ. 87բ—142բ. Աւետարան ըստ Մարկոսի (ցանկով և նախադրությամբ)։*
*գ. 143ա—232ա. Աւետարան ըստ Ղուկասու (ցանկով և նախադրությամբ)։*
*դ. 232բ—295բ. Աւետարան ըստ Յովհաննու (ցանկով և նախադրությամբ)։*

*Յուրաքանչյուր ավետարանից հատկանշված է այսպես.*

*3ա. «Մատթէոս թարգմանի՝ Երգ կենաց»։*

*115բ. «Իսկ Մարկոսի առի առիւծ,*
*Զի ի սզաճեմէ չէ գծուծ,*
*Երագ յորս յայտն ըմբռնէ բուծ,*
*Սոյն հարթ արար ըղբանս իւր խրթուծ»։*

*146բ. «Ղուկասու՝ յարութիւնն»։*
*«Այլ թէ զՂուկաս եզն գրեցին,*
*Զի, որպէս նա, հերկէ զգետին՝*
*Կրկին անխոնջ վասն պտղին,*
*Սոյնպէս երկարէ բանըս սմին»։*

237ա. «Իսկ Յովհաննէս արծուանման,
Թռեաւ մտօք անհասական՝
Առ ի պատմել բանին մարդկան
Զանճառն էիցս հանրական»:

ՀԻՇԱՏԱԿԱՐԱՆ

87ա. Ողորմեա և ինձ՝ ի կատարածի աւուր ահեղ դատաստանի, խաչատուր դպրի, որ է գործով թերի և զազրացեալ մեղաց միջի: Ողորմեա, տէր Յիսուս, և ծնողաց իմոց և ազգականաց:

115բ. Մեղապարտ գրչի՝ տրուպ Յարութիւն դպրի տուք ողորմի:

232ա. Փառաւորեալ և անճառելի ահեղանուն, ով տէր իմ Յիսուս Քրիստոս, Աստուած ճշմարիտ, մի ամաչեսցէ ի սոսկալի ատեան քո զխաչատուր մեղաւք լցեալ տարտամ ոգի, այլ ըստ մեծի ողորմութեան քո դասեսցես յաջակողմեան քում, և զծնաւղքս իմ՝ զՅովհաննէս վարդապետն և զմայրն իմ՝ զՎարդէն, և զորդեակ իմ՝ զպատանին Վահան, և զեղբայրս՝ զՆազարէթ վարդապետն, և զամենայն արեան մերձաւորս, և հաւասար ամենայն քրիստոնէից. ամէն: Հայր [մեր]:

295 բ. Գրեցաւ սուրբ Աւետարանս սա ձեռամբ հող և փոշի խաչատուր մեղօք ի լի, թվին ՌՃԾ (1701), ի Ջէթուն, ընդ հովանեաւ ընդ եկեղեցեացն որ աստ կան՝ յաւգնականութիւն ամենայն քրիստոնէիցն. ամէն:

З. АРЗУМАНЯН
(США)

## ОПИСАНИЯ АРМЯНСКИХ РУКОПИСЕЙ

(Р е з ю м е)

Автор описывает 6 армянских рукописей хранилища Пристонского университета, 10 рукописей и одну старопечатную книгу, хранящихся в Библиотеке Фри в Филадельфии в США, а также 2 рукописи университета Мак Джилл в Монреале.

REV. Z. ARZOUMANIAN
(EUA)

## DESCRIPTIONS DE MANUSCRITS ARMÉNIENS

(R é s u m é)

L'auteur décrit 6 manuscrits arméniens de la bibliothèque de l'Université de Priston et 10 manuscrits et 1 incunable de la Bibliothèque Free de Philadelphie aux EUA, ainsi que 2 manuscrits de l'Université Mac Gill de Montréal.